Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 22, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 32—86։




# ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Մի քանի օր առաջ տեղի ունեցավ Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենումը։ Պլենումը քննարկեց երեք հարց՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը 1948 թվականին իրագործելու միջոցառումները, գյուղում կատարվող կուլտուր-լուսավորական աշխատանքի գաղափարական մակարդակը բարձրացնելու միջոցառումների մասին և 1948 թվականի խորհրդային աշխատանքների հարցը։

Սովետական Հայաստանի պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգաններն ու կոլխոզային գյուղացիությունը 1947 թվականին զգալի աշխատանք կատարեցին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումն իրագործելու ուղղությամբ և հաջող ավարտեցին 1947 թվականի գյուղա-

տնտեսական աշխատանքները։ Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, ղեկավարվելով ընկեր Ստալինի իմաստուն ցուցումներով, հասավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության զգալի բարձրացման, կատարեց հանրային անասնաբուծության զարգացման ու նրա մթերատվության բարձրացման պլանները և ժամկետից շուտ կատարեց պետության հանդեպ ունեցած պարտավորությունները՝ գյուղատնտեսական մթերքների կարևորագույն տեսակների գծով։

Խնամքով ու լավ մշակելով գյուղատնտեսական կուլտուրաները, Ռեսպուբլիկայի կոլխոզները 1947 թվականին աճեցրին հեկտարից միջին հաշվով ավելի քան 12 ցենտներ հացահատիկային կուլտուրաների բերք 1946 թվականի 9,5 ցենտների փոխարեն. ստացան հեկտարից 215 ցենտներ շաքարի ճակնդեղ՝ 1946 թվականի 161 ցենտների փոխարեն։ Շատ կոլխոզներ, բարձր բերքի հարյուրավոր բրիգադներ ու օղակներ ստացան հեկտարից 100—150 փութ հացահատիկ։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը մի շարք միջոցառումներ նշեց մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա վե-



րելքի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը կենսագործելու մասին։ Հատկապես ընդգծելով ագիտացիոն-մասսայական աշխատանքի դերն ու նշանակությունը այդ գործում, պլենումը պարտավորեցրեց պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին՝ ագիտկոլեկտիվներն ամրապնդել քաղաքականապես պատրաստված ու գրագետ ագիտատորներով և նրանց միջոցով ամենօրյա աշխատանք կատարել կոլխոզնիկների մեջ՝ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումները պարզաբանելու ուղղությամբ։

Գյուղական բնակչության կուլտուր-մասսայական սպասարկումը, գյուղում կատարվող կուլտուր-լուսավորական աշխատանքը իր գաղափարական ու քաղաքական մակարդակով դեռևս լրիվ չի բավարարում գյուղական բնակչության աճած պահանջները և չի համապատասխանում կոլխոզային գյուղի տնտեսական աճմանը, շարունակում է կտրված լինել գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի կոնկրետ խնդիրներից։ Գյուղական շատ կուլտուրայի տներ, ակումբներ ու գրադարան-ընթերցարաններ անբավարար են աշխատում, սակավ են այնտեղ կազմա-

կերպվում դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ ու ընթերցանություններ, որոշ շրջանների (Կրասնոսելսկ, Ջանգիբասար, Մարտունի, Վեդի) կուլտուրայի տներում և գյուղական ակումբներում վատ է կազմակերպված խմբակների աշխատանքը, մի շարք շրջաններում ցածր է կուլտուր-լուսավորական աշխատանքի գաղափարական բովանդակությունը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը կոնկրետ միջոցառումներ նշեց գյուղում կուլտուր-լուսավորական աշխատանքի գաղափարական մակարդակը բարձրացնելու, կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցըն ընդարձակելու, գյուղական ինտելիգենցիային և կոլխոզային երիտասարդությանն այդ պատվավոր աշխատանքի մեջ լայնորեն ներգրավելու ուղղությամբ։ Գյուղում տրվող դասախոսությունների, զեկուցումների, անցկացվող զրույցների հիմնական բովանդակությունը պետք է լինի՝ գյուղի աշխատավորներին պարզաբանել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հիմնական հարցերը, սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, ցույց տալ սովետական էկոնոմիկայի և կուլտուրայի գերազանցությունը կապիտա-



լիստական երկրների էկոնոմիկայի և կուլտուրայի նկատմամբ, մերկացնել դաշնակների՝ իբրև հայ ժողովրդի ստոր թշնամիների և անգլո-ամերիկյան իմպերիալիզմի գործակալների՝ ռեակցիոն իդեոլոգիան ու քայքայիչ գործունեությունը, գիտականորեն բացատրել բնության երևույթները, կյանքի ծագումը, անհաշտ պայքար մղելով կրոնական աշխարհհայացքի ու նախապաշարմունքների դեմ։ Պլենումը պահանջեց վճռականորեն բարձրացնել գյուղում կատարվող կուլտուր-լուսավորական աշխատանքի գաղափարական-քաղաքական մակարդակը, գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկները դարձնել գյուղական բնակչության կոմունիստական դաստիարակության իսկական օջախներ։

Մեր ռեսպուբլիկայի համար մեծ նշանակություն ունեն իռիգացիոն շինարարության հարցերը, ոռոգվող տարածությունների ընդարձակումը։ Կատարված իռիգացիոն շինարարական աշխատանքների հետևանքով պատերազմի տարիներին և հետպատերազմյան երկու տարում ոռոգվող տարածությունները ռեսպուբլիկայում ավելացել են 23 հազար հեկտարով։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը

անհրաժեշտ համարեց մինչև 1950 թվականը ապահովել Թալինի ջրանցքի առաջին հերթի շինարարությունը՝ 12 հազար հեկտար անօգտագործելի հողեր ոռոգելու և գյուղատնտեսական կուլտուրաների մշակման նպատակով օգտագործելու համար, Արարատյան դաշտավայրում 1700 հեկտար հողերի ոռոգումը՝ 1948 թվականին, և այլ իրրիգացիոն ձեռնարկումներ։

Ներկայումս ագիտատորների խնդիրն է լայնորեն պարզաբանել Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումները, գյուղական բնակչության լայն մասսաների գիտակցությանը հասցնել գյուղատնտեսության հետագա վերելքի, գյուղում կատարվող կուլտուր-լուսավորական աշխատանքի զարգացման մակարդակը բարձրացնելու և մեր ռեսպուբլիկայում 1948 թվականին կատարվելիք իրրիգացիոն աշխատանքների կարևորագույն նշանակությունը, յուրաքանչյուր աշխատավորի սեփականությունը դարձնել այն միտքը, որ նշված ձեռնարկումների իրագործումն է՛լ ավելի կամրապնդի մեր սովետական Հայրենիքի ռազմա-տնտեսական հզորությունը, կբարձրացնի սովետական ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակը։



ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## „ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՄԱՆԻՖԵՍՏ“-Ի 100-ԱՄՅԱԿԸ

Այս տարվա փետրվարին լրանում է հարյուր տարին այն ժամանակից, երբ լույս տեսավ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ը— գիտական կոմունիզմի առաջին տեսական ու պրակտիկ ծրագրային փաստաթուղթը։ Հարյուր տարի առաջ, 1848 թվականի փետրվարին առաջին անգամ սեղմ կերպով, բայց բացառիկ պարզությամբ ու հստակորեն հռչակվեցին գիտական նոր աշխարհայացքի հիմունքները, որ մշակել էին ռևոլյուցիոն պրոլետարիատի ուսուցիչներ Մարքսը և Էնգելսը։

Մարքսի և Էնգելսի ճշմարիտ, ներդաշնակ, հետևողական և ամբողջական ուսմունքը, որ մեծագույն հեղաշրջում կատարեց գիտության մեջ, ծնվեց ո՛չ միանգամից։ Այն առաջ եկավ իբրև փիլիսոփայության, քաղաքատնտեսության և սոցիալիզմի մեծագույն ներկայացուցիչների ուսմունքի անմիջական ստեղծագործական շարունակությունը։

Գտնվելով իրենց ժամանակի գիտական մտքի գագաթին, Մարքսը և Էնգելսը 19-րդ դարի 40-ական թվականների եվրոպական ռևոլյուցիոն դասակարգային մարտերի շիկացած մթնոլորտում ծավալեցին ռևոլյուցիոն իդեոլոգիական ու պրակտիկ պայքար։ Ելնելով այն լավագույնից, ինչ ստեղծել էին գերմանական փիլիսոփայությունը, անգլիական քաղաքատնտեսությունը և ֆրանսիական սոցիալիզմը, Մարքսն ու Էնգելսը հանդես բերեցին անօրինակ ռևոլյուցիոն համարձակություն այդ ուսմունքների սահմանափակությունը քննադատորեն հաղթահարելու, դրանց սկզբունքային հիմունքների հակագիտականությունը երևան բերելու գործում։

Կոմունիստական գաղափարները, իբրև շահագործվողների իղձերի արտահայտություն, հայտնի էին դեռ վաղուց։ Էնգելսը մատնանշում է, որ ազնվականության դեմ ուղղված ամեն մի խոշոր բուրժուական շարժման ժամանակ բռնկում էր այն դասակարգի ինքնուրույն շարժումը՝ որը ժամանակակից պրոլետարիատի քիչ թե շատ զարգացած նախորդն է եղել։ Այդ շարժումներին ուղեկցում էին համապատասխան թեորիաներ, որոնք տալիս էին այն իդեալական հասարակակարգի նկարագիրը, որտեղ չեն լինի



դասակարգային տարբերություններ։ Այդ թեորիաները համապատասխան պատմական իրադրության արտացոլումն էին։ Պրոլետարիատը, որ դեռ չէր առանձնացել ընչազուրկների ընդհանուր մասսայից, ընդունակ չէր ինքնուրույն քաղաքական գործողությունների համար։

Այս իրադրության մեջ, եղած սոցիալիստական բազմաթիվ թեորիաների առկայության պայմաններում, Մարքսը և Էնգելսը մշակեցին իրենց ուսմունքը և, ամենից առաջ, պատմության իրենց մատերիալիստական թեորիայի գլխավոր գծերը։ Այդ թեորիայի տեսանկյունով պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումը պատկերանում էր իբրև պատմականորեն անխուսափելի մի երևույթ։ Կոմունիզմը հանդես էր գալիս արդեն ոչ իբրև մի ֆանտաստիկ հորինվածք՝ այլ իբրև կապիտալիզմի զարգացման և պրոլետարիատի դասակարգային պայքարի օրինաչափական զարգացման արդյունք։

***

Մարքսը և Էնգելսը՝ որ ամենագործունյա մասնակցություն ունեին կազմակերպված պրոլետարիատի քաղաքական շարժմանը, ուշի-ուշով հետևում էին այդ շարժման յուրաքանչյուր քայլին և ձգտում էին այն գի-

նել ճշմարիտ թեորիայով, դնել իսկական ռեվոլյուցիոն ուղու վրա։

Օրեց-օր աճում էր Մարքսի և Էնգելսի կողմնակիցների թիվը։ Մարքսը և Էնգելսը հենվում էին բանվորների այն մասի վրա, որը ձգտում էր հասարակության արմատական վերակառուցմանը և իրեն անվանում էր կոմունիստական։ 1847 թվականի գարնանը գերմանական վտարանդիներից կազմված Լոնդոնի ինտերնացիոնալ «Արդարների միության» ներկայացուցիչները Մարքսին և Էնգելսին հրավիրեցին մտնել այդ Միության մեջ, ըստ որում հայտարարելով, թե իրենք համոզված են Մարքսի ու Էնգելսի հայացքների ճշտությանը և պատրաստ են հրաժարվել հին դավադրական տրադիցիաներից։ Մարքսը և Էնգելսը մտան այդ Միության մեջ։ 1847 թվականի հունիսին կայացավ Միության առաջին կոնգրեսը։ Կազմակերպությունը վերանվանվեց «Կոմունիստների միություն»։ Մարքսի և Էնգելսի ուսմունքի ազդեցության տակ Միությունը իր Կանոնադրության առաջին պարագրաֆում իբրև հիմնական նպատակ հայտարարեց՝ բուրժուազիայի տապալումը, պրոլետարիատի տիրապետության հաստատումը, դասակարգերի հակամարտության վրա հիմնված հին, բուրժուա-



կան հասարակության ոչնչացումը և նոր հասարակակարգի հիմնումը՝ առանց դասակարգերի և առանց մասնավոր սեփականության։

Միության կոնգրեսը հանձնարարեց զանազան երկրների իր տեղական բաժանմունքներին, Կանոնադրությամբ սահմանված նպատակին համապատասխան կազմել Միության ծրագիրը։ Միության մի շարք անդամներ կազմեցին ծրագրի մի քանի նախագիծ՝ հարց ու պատասխանի ձևով։ Էնգելսը խիստ քննադատեց այդ նախագծերը և գրեց մի նոր նախագիծ, նույնպես հարց ու պատասխանի ձևով, որ կոչվում էր «Կոմունիզմի սկզբունքները»։ Սակայն Էնգելսը գտնում էր, որ ծրագիրը պետք է կազմված լինի մանիֆեստի ձևով։

Միության երկրորդ համագումարում, որը կայացավ 1847 թվականի նոյեմբերին, Մարքսը և Էնգելսը տասնօրյա համառ պայքարի ընթացքում պրոպագանդա էին անում և պաշտպանում էին իրենց ուսմունքը ընդդեմ ծրագրի զանազան մանր-բուրժուական, ուտոպիական նախագծերի, որ ներկայացրել էին Միության մյուս անդամները։ Կոնգրեսը մերժելով այդ բոլոր նախագծերը, միաձայն ընդունեց Մարքսի ու Էնգելսի կոմունիզմի

սկզբունքները և հանձնարարեցին նրանց մշակել Մանիֆեստը։ Երեք շաբաթից հետո արդեն պատրաստ էր «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ը — պրոլետարների առաջին միջազգային կազմակերպության՝ Մարքսի ու Էնգելսի ղեկավարությամբ ստեղծված «Կոմունիստների Միության» ծրագրային փաստաթուղթը։



Շատ դարերի ընթացքում գիտնականները հասարակական կյանքը դիտում էին իբրև պատահականությունների կուտակում։ Կյանքում կատարվող փոփոխությունները նրանք բացատրում էին հանճարեղ մարդկանց, զորավարների, թագավորների գործունեությամբ։ Սակայն հատկապես 18-րդ և 19-րդ դարերում տեղի ունեցած հասարակական խոշոր փոփոխությունները պահանջեցին երևան բերել այն իսկական պատճառները, որոնցով պայմանավորված էին այդ փոփոխությունները, գտնել պատմական զարգացման շարժիչ ուժերը։

Հետազոտելով հարուստ պատմական նյութը, վերլուծելով կապիտալիզմի իրական հարաբերությունները, գիտական կոմունիզմի ստեղծողները եկան այն հիմնական հետևության, որ ամեն մի պատմական դարա-



շրջանի տնտեսական արտադրությունը և դրանից անխուսափելիորեն բխող հասարակական կառուցվածքը կազմում են նրա քաղաքական ու մտավոր պատմության հիմքը. որ, դրան համապատասխան, նախնական համայնական հողատիրության քայքայման ժամանակից ի վեր ամբողջ պատմությունը դասակարգային պայքարի պատմություն է եղել, շահագործվողների ու շահագործողների, հպատակ ու իշխող դասակարգերի միջև հասարակական զարգացման զանազան աստիճաններում մղված պայքարի պատմություն, և որ այժմ այդ պայքարը հասել է այնպիսի աստիճանի, երբ շահագործվող ու ճնշված դասակարգը (պրոլետարիատը) չի կարող այլևս ազատագրվել իրեն շահագործող ու ճնշող դասակարգից (բուրժուազիայից), առանց միևնույն ժամանակ ամբողջ հասարակությունը ընդմիշտ ազատագրելու շահագործումից, ճնշումից ու դասակարգային պայքարից» («Մանիֆեստ»-ի գերմաներեն հրատարակության նախաբանը)։

Այս հիմնական մտքի զարգացմանն էլ հենց նվիրված է «Կոմունիստական մանիֆեստ»-ի առաջին գլուխը։ Այս գլխում Մարքսը և Էնգելսը ցույց են տալիս ֆեոդալական հասարակության ընդերքում կապիտալիզմի

առաջացման պրոցեսը, ֆեոդալիզմի քայքայումը և բուրժուազիայի տիրապետության հաստատումը էկոնոմիկայի, ապա նաև քաղաքականության ասպարեզում։

Բուրժուազիան չէր կարող գոյություն ունենալ, առանց մշտապես հեղափոխելու արտադրության գործիքները, իսկ հետևաբար՝ արտադրական ու ողջ հասարակական հարաբերությունները։ Բուրժուազիան բոլոր երկրների արտադրությունն ու սպառումը դարձրեց ընդհանուր։ Հին, տեղական ու ազգային պարփակվածության փոխարեն, երևան եկան բազմակողմանի կապերն ու ժողովուրդների բազմակողմանի կախումը միմյանցից։ Բուրժուազիան գյուղը ենթարկեց քաղաքի տիրապետությանը, հետամնաց երկրները դարձրեց իրեն համար գաղութներ։ Բուրժուազիան կենտրոնացրեց արտադրության միջոցները, դարձնելով այն փոքրաթիվ մարդկանց սեփականություն։ Դրա անխուսափելի հետևանքը եղավ քաղաքական կենտրոնացումը։

Արտադրողական ուժերի զարգացման հետևանքով հին, ֆեոդալական գույքային հարաբերությունները դարձան արտադրությունն



արգելակող կապանքներ։ Դրանք անհրաժեշտ էր փշրել և դրանք փշրվեցին բուրժուական ռևոլուցիաների միջոցով։ Սկսեցին իշխել նոր, կապիտալիստական արտադրական հարաբերությունները։ Բուրժուական հասարակարգի պատմականորեն առաջադիմական դերն այն էր, որ նա իր տիրապետության հազիվ մեկ հարյուրամյակի ընթացքում «ստեղծեց ավելի շատ և ավելի վիթխարի արտադրողական ուժեր, քան ստեղծել էին բոլոր նախորդ սերունդները միասին»։

Այնուհետև Մարքսը և Էնգելսը բացահայտում են բուրժուական արտադրական հարաբերությունների անհամապատասխանությունը արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերված մակարդակին։ Բուրժուական հասարակության հիմնական հակասությունը — հակասությունն է արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր, կապիտալիստական եղանակի միջև, որն ավելի ու ավելի է խորանում կապիտալիզմի զարգացման հետ միասին։ Այդ հակասության ամենացայտուն արտահայտությունն են «գերարտադրության համաճարակները»։ Պարբերաբար կրկնվող ճգնաժամերն ավելի ու ավելի ահեղ կերպով «հար-

ցականի տակ են դնում ամբողջ բուրժուա-
կան հասարակության գոյությունը»: Ճգնա-
ժամերը հաղթահարելու համար բուրժուա-
զիան ոչնչացնում է ոչ միայն պատրաստ-
ված մթերքների մի մասը, այլև արտադրո-
ղական ուժերի ամբողջ զանգվածներ, ձըգ-
տում է նվաճել նոր շուկաներ, ավելի ուժեղ
շահագործել հին շուկաները: Բայց ճգնաժա-
մերն ավելի են խորանում, դառնում են ա-
վելի ցնցող, իսկ դրանց կանխման միջոց-
ները նվազում են:

Բուրժուական հարաբերությունները, ո-
րոնք նպաստում էին հզոր արտադրողական
ուժերի ստեղծմանը, չափազանց նեղ են
դառնում իրենց ստեղծած հարստու-
թյունը տեղավորելու համար, նրանք արգե-
լակում են արտադրության հետագա զարգա-
ցումը:

Պարզաբանելով կապիտալիստական հա-
սարակական-տնտեսական ֆորմացիայի
պատմականորեն ժամանակավոր բնույթը,
Մարքսն ու Էնգելսը ցույց են տալիս այն
պատմական միսիան, որ ունի կապիտա-
լիզմի ծնունդ հանդիսացող շահագործվող-
ների դասակարգը՝ պրոլետարների դասա-
կարգը, իբրև կապիտալիզմի գերեզմանա-
փոր և նոր հասարակակարգի ստեղծող: Կա-



պիտալիզմը զարգանալուն և արտադրության
միջոցները խոշոր կապիտալիստների ձեռ-
քում կենտրոնանալուն զուգընթաց, մանր
արտադրողները քայքայվում են, համալրե-
լով պրոլետարիատի շարքերը, կապիտալի
վարձու ստրուկների շարքերը: Բուրժուա-
զիայի դեմ պրոլետարիատի պայքարն սկըս
վում է նրա երևան գալու հետ միաժամա-
նակ: Սկզբում այդ պայքարը կրում էր ան-
կազմակերպ բնույթ: Բանվորները հանդես
էին գալիս միայնակ, առանձին խմբերով
ոչնչացնում էին մեքենաները, հրկիզում գոր-
ծարանները: Բայց արդյունաբերության
զարգացմանը զուգընթաց պրոլետարիատը
աճում է ոչ միայն թվով, այլև աճում են նրա
ուժերը, և նա իր ուժն ավելի մեծ չափով
է զգում: Կապիտալիստների դասակարգի
դեմ հաշող պայքար մղելու համար պրոլե-
տարիատը միավորվում է: Բանվորների հա-
մատեղ պայքարը վերածվում է համազգա-
յին դասակարգային պայքարի:

Պրոլետարիատի զարգացման պրոցեսին
նպաստում է ինքը՝ բուրժուազիան: Ազնվա-
կանության դեմ, այնուհետև արդյունաբե-
րության զարգացմանը խանգարող այլ ու-
ժերի, մյուս երկրների բուրժուազիայի դեմ
իր պայքարի մեջ նա ստիպված է լինում

դիմել պրոլետարիատի օգնությանը, պրոլետարիատին մղում է քաղաքական շարժման ուղին, հաղորդելով նրան իր սեփական կրթության տարրեր։ Պրոլետարիատը ձեռք է բերում քաղաքական պայքարի ունակություններ, կազմակերպման ունակություններ, օգտագործելով դրանք ընդդեմ բուրժուազիայի։

Շարադրելով պրոլետարիատի զարգացման պատմությունը, Մարքսն ու Էնգելսը նշում են, որ արդյունաբերության զարգացմանը զուգընթաց ավելի ու ավելի է աճում պրոլետարիատի աղքատությունը, բուրժուազիան անընդունակ է դառնում այլևս տիրապետելու, նա անընդունակ է դառնում «ապահովելու իր ստրուկների նույնիսկ ստրկական գոյությունը»։ Պրոլետարիատն ընդհուպ մոտեցվում է յուրացման կապիտալիստական սիստեմը ոչնչացնելու, բուրժուազիային, ամենից առաջ «իր» ազգային բուրժուազիային տապալելու անհրաժեշտությանը։

«Այսպիսով,— գրում են Մարքսը և Էնգելսը,— խոշոր արդյունաբերության զարգացմանը զուգընթաց, բուրժուազիայի ոտքի տակից խլվում է այն հիմքը, որին հենված նա արտադրում է և յուրացնում արդյունքները։ Նա արտադրում է ամենից առաջ իր



սեփական գերեզմանափորներին։ Նրա կործանումը և պրոլետարիատի հաղթանակը հավասարապես անխուսափելի են»։

***

«Մանիֆեստ»-ի երկրորդ բաժնում Մարքսը և Էնգելսը քննության են առնում կոմունիստների պարտիայի հարցը, իբրև պրոլետարների դասակարգի առաջավոր ջոկատի· որը կոչված է ղեկավարելու և ուղղություն տալու դասակարգի ռևոլյուցիոն շարժմանը։ Կոմունիստները «իրականում բոլոր երկրների բանվորական պարտիաների ամենավճռական, միշտ առաջ մղող մասն են, իսկ թեորիական տեսակետից՝ պրոլետարիատի մնացած զանգվածի հանդեպ նրանց առավելությունն այն է, որ գիտեն պրոլետարական շարժման պայմանները, ընթացքը և ընդհանուր հետևանքները»,— ասված է «Մանիֆեստ»-ում։

Մեծ աշխատանք կատարելով կոմունիստական պարտիայի կազմակերպման ուղղությամբ, պարտիական խմբեր ստեղծելով Ֆրանսիայում, Բելգիայում, Գերմանիայում, Անգլիայում, Մարքսը և Էնգելսը իրենց չէին հակադրում մյուս բանվորական պարտիաներին, որոնք առաջ էին գալիս զանազան ձևերով, կոնկրետ իրադրության համապա-

տասխան։ Բանվորական մասսաների քաղաքական զարգացումը դեռ անբավարար էր։ Մարքսը և Էնգելսը եռանդուն գործունեություն ծավալեցին բանվորական լայն մասսաներին արագ կերպով համախմբելու և կոմունիստների ծրագրի շուրջը կազմակերպելու համար։

Կոմունիստների խմբերը զանազան երկրներում պետք է մեծ աշխատանք կատարեին մասսայական պրոլետարական խոշոր կազմակերպություններում և նրանց առաջ մղեին ռևոլյուցիոն դասակարգային պայքարի ուղիով, առանձին երկրների սոցիալիստական պարտիաները դաստիարակեին անհաշտ դասակարգային պայքարի և կոմունիստական ծրագրի ոգով։

Ընդգծելով կոմունիստական շարժման ինտերնացիոնալ բնույթը, Մարքսը և Էնգելսը գրում էին. «Կոմունիստները պրոլետարական մյուս պարտիաներից տարբերվում են մի կողմից նրանով, որ ազգային սահմաններում տեղի ունեցող զանազան պրոլետարական պայքարներից նրանք առաջ են քաշում և արժեք տալիս այն շահերին, որոնք անկախ են ազգությունից և ընդհանուր են ողջ պրոլետարիատի համար, իսկ մյուս կողմից նրանով, որ պրոլետարիատի և բուրժուազիայի միջև տեղի ունեցող պայքարի զարգացման զանազան աստիճաններում նրանք միշտ պաշտպանում են ամբողջական շարժման շահերը»։

Մարքսը և Էնգելսը հստակորեն սահմանում են կոմունիստական շարժման նպատակները։ Տապալելով բուրժուազիայի տիրապետությունը և նվաճելով քաղաքական իշխանություն, պրոլետարիատը սեփականության իրավունքի և բուրժուական արտադրական հարաբերությունների մեջ դեսպոտիկ ներթափանցման միջոցով բուրժուազիայի ձեռքից աստիճանաբար խլում է ամբողջ կապիտալը, արտադրության բոլոր գործիքները կենտրոնացնում է պետության ձեռքում, վերացնում է հին արտադրական հարաբերությունները և դասակարգային հակադրության գոյության պայմանները։ «Հին բուրժուական հասարակության տեղը՝ նրա դասակարգերով ու դասակարգային հակասություններով, գրավում է մի ասոցիացիա, որի մեջ յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է հանդիսանում»։

Տալով գիտական կոմունիզմի հիմնական դրույթների կլասիկ շարադրանքը, բնորոշելով ռևոլյուցիոն պրոլետարիատի պատմական միսիան և նրա ավանգարդի՝ կոմունիստա-

կան պարտիայի խնդիրները, Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական մանիֆեստ»-ի երրորդ բաժնում ջախջախիչ քննադատության են ենթարկում բազմաթիվ իբր թե սոցիալիստական ուսմունքները՝ ֆեոդալական, մանր-բուրժուական, պահպանողական կամ բուրժուական և քննադատական-ուտոպիական սոցիալիզմը, վարպետորեն ցույց են տալիս դրանց անհեթեթությունը, ռեակցիոնությունը, ուտոպիականությունը։

«Մանիֆեստ»-ի վերջին բաժնում՝ «Զանազան օպոզիցիոն պարտիաների նկատմամբ կոմունիստների վերաբերմունքի» մասին, Մարքսը և Էնգելսը մատնանշում են, որ կոմունիստները իրենց նպատակին հասնելու համար «ամենուրեք պաշտպանում են ամեն մի ռևոլյուցիոն շարժում, որն ուղղված է գոյություն ունեցող հասարակական ու քաղաքական կարգերի դեմ»։ Նրանք պայքար են մղում բանվոր դասակարգի մերձավոր նպատակների ու շահերի համար, առանց թաքցնելու իրենց հայացքներն ու մտադրությունները — կապիտալիզմի բռնի տապալումը կոմունիստական ռևոլյուցիայի միջոցով։ Այդ նպատակով էլ կոմունիստները կապիտալի վարձու ստրուկների դասակար-



գին են դիմում, կոչ անելով «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։

***

Մարքսի և Էնգելսի ուսմունքը, որն ապացուցեց կապիտալիզմի անխուսափելի կործանումը և սոցիալիզմի հաղթանակը, իր դեմ հանեց ամբողջ բուրժուական գիտության չար կատաղությունը։ Կոմունիզմի ուրվականից սարսափած՝ բուրժուական գաղափարախոսներն սկսեցին «հերքել» մարքսիզմը։ Մարքսի և Էնգելսի ուսմունքը, պետք է, ինչպես Լենինն է ասել, «մարտով նվաճեր յուրաքանչյուր քայլը կյանքի ուղու վրա»։ Բացի դրանից, իր սկզբնավորման առաջին շրջանում մարքսիզմը սոցիալիզմի բազմաթիվ հոսանքներից մեկն էր, ուստի «Կոմունիստական մանիֆեստ»-ն իր երևան գալու պահին ցնծությամբ դիմավորվեց գիտական սոցիալիզմի փոքրաթիվ ավանգարդի կողմից միայն։

Սակայն պատմական իրադարձությունները և Մարքսի ու Էնգելսի պայքարը թեորիական ֆրոնտում, լիակատար հաղթանակ բերեցին մարքսիզմին։ 1848 թվականի ռևոլյուցիան, որը ցույց տվեց բուրժուական հասարակության բոլոր դասակարգերը գործողության մեջ, մահացու հարված հասցրեց

մինչմարքսյան սոցիալիզմի բոլոր աղմկոտ ու ճղճղան ուսմունքներին։ Իրադարձությունները հաստատեցին մարքսիստական այն ճշմարտությունը, որ սոցիալիզմի համար պայքարող իսկական մարտիկ կարող է լինել միայն պրոլետարիատը։

1871 թվականի իրադարձություններից հետո մարքսիզմը դարձավ պրոլետարական շարժման տիրապետող իդեոլոգիան, իսկ «Կոմունիստական մանիֆեստ»-ը դարձավ «ամբողջ սոցիալիստական գրականության ամենատարածված, ամենամիջազգային երկը, բոլոր երկրների միլիոնավոր բանվորների ընդհանուր ծրագիրը՝ Սիբիրից սկսած մինչև Կալիֆորնիա» (Էնգելս)։

Բայց «Պատմության դիալեկտիկան այնպիսին է,— գրել է Լենինը,— որ մարքսիզմի թեորիական հաղթանակը նրա թշնամիներին ստիպում է վերազգեստավորվել իբրև մարքսիստներ։ Ներքուստ նեխած լիբերալիզմը փորձում է իրեն կենդանացնել սոցիալիստական օպորտունիզմի ձևով»։

19-րդ դարի վերջերին միջազգային բանվորական շարժման մեջ երևան է գալիս մարքսիզմին թշնամի հոսանք՝ օպորտունիզմը, ռևիզիոնիզմը։ Մարքսը և Էնգելսը պայքար են մղում օպորտունիզմի



դեմ, որ գլուխ էր բարձրացրել դեռևս նրանց կենդանության օրով։ Մարքսի և Էնգելսի մահից հետո Երկրորդ ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական պարտիաների ներսում սկսվեց մարքսիզմի բացահայտ ռևիզիան, մասնավորապես «Կոմունիստական մանիֆեստ»-ի հիմնական դրույթների ռևիզիան։ Աղճատելով մարքսիզմի ռևոլյուցիոն էությունը, քարոզելով հրաժարումն դասակարգային պայքարից և պրոլետարիատի դիկտատուրայից, քարոզելով «սոցիալական խաղաղության» և «սոցիալիզմի մեջ խաղաղ ներաճման» թեորիան, II Ինտերնացիոնալի առաջնորդները կանգնեցին կապիտալիզմի պաշտպանների ուղու վրա։

Այնինչ ստեղծված նոր դարաշրջանը՝ իմպերիալիզմի դարաշրջանը «կապիտալիզմի հակասությունները հասցրեց մինչև վերջին գիծը, մինչև ծայրահեղ սահմանները, որից այնկողմ սկսվում է ռևոլյուցիան» (Ստալին)։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հարցը պրոլետարիատի առջև ծառացավ իբրև պրակտիկ հարց։ Հարկավոր էր այդ իրադրության մեջ ոչ միայն ռևիզիոնիստների «քննադատությունից» պաշտպանել «Մանիֆեստի»-ի հիմնական իդեաները և Մարքսի ու Էնգելսի ուսմունքը՝ ամբողջությամբ վեր-

ցրած, այլև հարկավոր էր է՛լ ավելի զարգացնել մարքսիզմը, այն հարստացնել նոր հայտնագործումներով, հնացած դրույթները փոխարինել նոր դրույթներով, որո՛նք համապատասխանեին նոր հասարակական իրադրությանը և բխեին դրանից։

Այս խնդիրը փայլուն կերպով կատարեցին բոլշևիզմի առաջնորդներ Լենինը և Ստալինը։ Վճռական պայքարի ելնելով ՌՍԴԲՊ-ի և II Ինտերնացիոնալի ներսում ծնունդ առած օպորտունիզմի դեմ, Լենինը և Ստալինը, բոլշևիկների պարտիան պաշտպանեցին մարքսիզմը իբրև կենդանի գիտություն, իբրև ռևոլյուցիոն թեորիա՝ ռևոլյուցիոն գործողության համար։ Մերկացնելով դավաճաններ Կաուցկուն, Շեյդեմաննին, Լոնգեին, Հենդերսոնին և ուրիշների, իբրև իմպերիալիզմի պաշտպանների, Լենինը և Ստալինը է՛լ ավելի զարգացրին «Կոմունիստական մանիֆեստ»-ի գաղափարները, Մարքսի և Էնգելսի ուսմունքը, ստեղծելով սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիան, պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ ծավալուն թեորիան, սոցիալիզմի կառուցման, պարտիայի վերաբերյալ, ազգային-գաղութային հարցի թեորիաները, պրոլետարական շարժումը զինելով հաղթա-



կան հզոր գաղափարական զենքով՝ լենինիզմով։

***

Հարյուր տարի է անցել «Կոմունիստական մանիֆեստ»-ը լույս տեսնելու ժամանակից։ Համաշխարհային պատմությունը փայլուն կերպով հաստատեց Մարքսի և Էնգելսի հանճարեղ գաղափարների ճշտությունը, որոնք շարադրված են «Մանիֆեստ»-ում։ «Մանիֆեստ»-ի տրիումֆը հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մեր երկրում։ Դեռևս 1926 թվականին, ՀամԿ(բ)Պ 15-րդ կոնֆերենցիայում ընկեր Ստալինը նշեց, որ ինը տասներորդը պրոլետարական ռևոլյուցիայի այն ծրագրի, որ տվել է Էնգելսն իր «Կոմունիզմի սկզբունքներ»-ում, արդեն իրագործված է մեր ռևոլյուցիայի շնորհիվ։ «Մանիֆեստ»-ի տրիումֆը նրա հարյուրամյակին հանդիսանում է մեր երկրում հաղթանակած սոցիալիզմը, դեպի սոցիալիզմը տանող հաղթական շարժումը արևելյան ու հարավ-արևելյան Եվրոպայի մի շարք երկրներում։

Կոմունիզմը վաղուց արդեն դադարել է ուրվական լինելուց։ Կապիտալիզմի հիմքերը ճարճատում և փուլ են գալիս։ «Իմպե-

ռիալիստների շղագար ճիգերը, որոնց ոտքի տակ հողը երերում է, չեն փրկի կապիտալիզմը մոտալուտ կործանումից: Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմը» (Մոլոտով):

Լենինը 1895 թվականին Էնգելսի հիշատակին նվիրված իր հոդվածի մեջ «Մանիֆեստ»-ի մասին գրել է. «Այս փոքրիկ գըրքույկն արժե ամբողջ հատորներ. Նրա ոգով է ապրում ու շարժվում մինչև այժմ քաղաքակիրթ աշխարհի ամբողջ կազմակերպված ու մարտնչող պրոլետարիատը»:

«Կոմունիստական Մանիֆեստ»-ի ոգով են մեր օրերում ապրում կապիտալիստական աշխարհի միլիոնավոր պրոլետարները, որոնք երկաթյա շարքերով համախմբված են հզոր կոմունիստական պարտիաների շուրջը, պայքար են մղում ընդդեմ իմպերիալիստական ռեակցիայի ուժերի, ընդդեմ սոցիալիզմի ու դեմոկրատիայի թշնամիների, պատրաստվում են գալիք մարտերին՝ հանուն կոմունիզմի հաղթանակի ամբողջ աշխարհում:

Ա. ԻՍԱՀԱԿՅԱՆ



ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ՈՐԱԿՈՎ ՆՈՐՈԳԵԼ ՏՐԱԿՏՈՐՆԵՐՆ ՈՒ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Անշեղորեն իրականացնելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին», մեր ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները 1947 թվականին ձեռք բերին զգալի հաջողություններ: Ռեսպուբլիկայի կոլխոզները և մեքենատրակտորային կայանները ժամանակին կատարեցին ու գերակատարեցին գյուղատնտեսության զարգացման պլանները: Ժամկետից շուտ ավարտեցին պետական պարտավորությունների հանձնումը և ՄՏԿ-ների աշխատանքի դիմաց հասնող բնավճարը, 1946 թվականի համեմատությամբ զգալիորեն բարձրացրին հացահատ-

կային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։

Սակայն առաջավոր շրջանների, կոլխոզների և ՄՏԿ-ների կողքին եղան նաև այնպիսի կոլխոզներ, ՄՏԿ-ներ, որոնց ղեկավարները օբեկտիվ պատճառների անվան տակ վճռական պայքար չծավալեցին բարձր բերքատվության համար, գյուղատնտեսական արտելի կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդման համար, չկատարեցին կոլխոզների ու ՄՏԿ-ների միջև կնքված պայմանագրերով նախատեսնվող տրակտորային բոլոր տեսակի աշխատանքները՝ սահմանված ագրոտեխնիկական ժամկետներում, կոպիտ սխալներ թույլ տվին կադրերի ճիշտ դասավորման, մեքենա-տրակտորային պարկի լավագույն օգտագործման ասպարեզում, ունեցան միջոցների և վառելանյութի գերածախս։

Գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները երբեք չպետք է մոռանան, որ նրանց ամբողջ պրակտիկ գործունեությունը գնահատվում է նրանով, թե նրանք ի՞նչպես են կատարում ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը։ Փետրվարյան պլենումը մեքենա-տրակտորային կայանների



առաջ խնդիր դրեց բարձրացնել կոլխոզային դաշտերի բերքատվությունը, բարելավել մեքենա-տրակտորային պարկի օգտագործումը, բարձրացնել տրակտորային աշխատանքների որակը և այդ աշխատանքները կատարել ագրոտեխնիկական ժամկետներում։ Այս խնդիրների կատարման հիմնական պայմանն է հանդիսանում տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների ժամանակին ու բարձրորակ նորոգումը։

Պայքարը բարձր բերքի համար, ծավալվում է այժմվանից։ Այս տարի ռեսպուբլիկայի ՄՏԿ-ներն ու կոլխոզները ավելի կազմակերպված են անցկացնում տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների նորոգումը։

Չնայած դրան, առանձին մեքենա-տրակտորային կայանների ու կոլխոզների աշխատանքներում դեռևս լուրջ թերություններ կան նորոգման պլանները կատարելու, ինչպես և նորոգման որակի տեսակետից։

Անցյալ տարիների փորձը ցույց է տվել, որ այն ՄՏ. կայաններն ու կոլխոզները, որոնք ուշացնում են տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների նորոգումը, որպես կանոն, վատ են կատարում իրենց պլանները գյուղատնտ-

տակաև բոլոր աշխատանքների գծով։ Նրանք ուշացնում են գարնանացանը, ձեռքից բաց են թողնում ցանքի լավ ժամկետները, որի հետևանքով իջնում է բերքատվությունը, որն իր հերթին հասցնում է այն բանին, որ թերակատարվում են պետության հանդեպ ունեցած պարտավորությունները։ Այդ պատճառով էլ տրակտորների և գյուղգործիքների ժամանակին ու որակյալ նորոգումը բացառիկ նշանակություն է ստանում։ ՄՏ կայանների աշխատողները ինչպես նորոգման ընթացքում, այնպես էլ նորոգված մեքենաները հանձնաժողովների կողմից ընդունվելիս պետք է մանրազննին կերպով ստուգեն յուրաքանչյուր հանգույցի, ագրեգատի նորոգման որակը և թույլ չտան, որ պետությանը ներկայացվող հաշվետվության մեջ գրանցվեն թերություն ունեցող մեքենաներ։ Նորոգման որակն այնքան բարձր պետք է լինի, որ ապահովվի մեքենայի անխափան աշխատանքն առանց լրացուցիչ նորոգումների՝ առնվազն մինչև բերքահավաքը։

Տրակտորային ագրեգատի հուսալի աշխատանքը շատ բանով կախված է կցորդ ինվենտարի վիճակից։ Չի կարելի լրիվ կարողությամբ օգտագործել տրակտորը, եթե կցորդ մեքենան՝ գութանը, շարքացանը.



կուլտիվատորը լավ վիճակում չէ։ Քիչ չեն այնպիսի փաստերը, երբ գութանը վատ նորոգելու պատճառով կատարվել է անորակ վար, կամ վատ նորոգված շարքացանի գործածության հետևանքով ծախսվել է սահմանված նորմայից ավել սերմացու։ Այդ պատճառով էլ այժմ հիմնական մեքենաների հետ միասին, անհրաժեշտ է արագ տեմպով ծավալել գութանների, շարքացանների, կուլտիվատորների բարձրորակ նորոգումը այն հաշվով, որ ամբողջ մեքենա-տրակտորային պարկը, կցորդ ինվենտարի հետ միասին, մինչև դաշտային աշխատանքների սկսվելը՝ լրիվ պատրաստ վիճակում լինի։

Նորոգման աշխատանքները հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է, որ բանվորները, տրակտորիստները, կոմբայնավարները, բրիգադիրները, մեխանիկներն ունենան իրենց աշխատանքի որոշակի տեղը, ամեն օր ստանան առաջադրանքներ և պայքարեն այդ առաջադրանքները կատարելու համար։ Անհրաժեշտ է ամեն օր պլանավորել և հաշվի առնել նորոգման արհեստանոցի, առանձին ցեխերի, նորոգման բրիգադաների, բանվորների աշխատանքը՝ ժամանակին վերացնել նկատված թերությունները, թույլ չտալ, որ մեխանիկների, ցեխի վարիչների,

նորոգման բրիգադաների բրիգադիրների թափթփվածության պատճառով տեղի ունենան պարապուրդներ։

Տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների նորոգման հաջող ընթացքը շատ բանով կախված է մասսայական քաղաքական աշխատանքի լավ դրվածքից։ Պետք է անհապաղ արձագանքել լավագույն նախաձեռնությանը, առաջ մղել հետ մնացողներին, ամեն կերպ նպաստել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Դրան կարելի է հասնել, եթե ագիտատորները ամեն օր մասսայականացնեն առաջավորների ձեռք բերած նվաճումները ու լավագույն փորձը, հաճախակի կազմակերպեն զրույցներ, թերթերի բարձրաձայն ընթերցանություն, սիստեմատիկաբար հրատարակեն պատի թերթերը, խլիչովկաները։

Կույբիշևցիների նախաձեռնությամբ ներկայումս ծավալված է մեքենա-տրակտորային կայանների աշխատողների Համամիութենական սոցիալիստական մրցություն։ Մրցության մեջ հաղթանակ տանելու գլխավոր պայմանը տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների աշնան-ձմեռային նորոգման հաջող ավարտումն է։ Նորոգման բրիգադաների, ցեխերի



արհեստանոցների և ՄՏ կայանների բոլոր աշխատողների մարտական խնդիրն է՝ պայքար ծավալել մրցության մեջ առաջնություն շահելու համար։

Չպետք է մոռանալ, որ տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների ժամանակին ու բարձրորակ նորոգումն ունի տնտեսական և քաղաքական խոշոր նշանակություն՝ գյուղատնտեսության հետագա վերելքըն ապահովելու, բերքատվությունը բարձրացնելու, ՄՏ կայանների և կոլխոզների աշխատանքը բարելավելու գործում։ Ուստի ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է տարվի այն ուղղությամբ, որ նա մոբիլիզացնի մեքենա-տրակտորային կայանների ու արհեստանոցների բոլոր աշխատողներին, կոլխոզնիկներին՝ ժամանակին ու որակով կատարելու տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների նորոգումը։

Ռ. ՅԱՂՈՒԲՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

# ՆՈՐ, ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԼԵՀԱՍՏԱՆԸ

1939 թվականին հիտլերյան հրոսակախմբերը գրավեցին և ստրկացրին Լեհաստանը։ Իրենց տնօրինության հինգ տարվա ընթացքում հիտլերականները Լեհաստանին պատճառեցին վիթխարի ավերածություններ, որոնք գնահատվում են 100 միլիարդ նախապատերազմյան զլոտի։ Ամենամեծ կորուստ կրեցին տրանսպորտը և ծանր արդյունաբերությունը։ Գերմանացիները հսկայական քանակությամբ գործարանային սարքավորում, հացահատիկ և անասուն տարան Գերմանիա։ Միայն Սովետական Բանակի սրընթաց հարձակումը 1944—1945 թ. թ. ձմռանը վերջնական ավերումից փրկեց երկու կարևորագույն ինդուստրիալ կենտրոնների՝ Լոձի և Սիլեզիայի արդյունաբերությունը։

Նյութական արժեքների ոչնչացումը, Լեհաստանի ազգային հարստության կողոպտումը գերմանացիների կողմից, ուղեկցվում էր բնակչության հրեշավոր բնաջնջմամբ։



Օկուպացիայի տարիներին հիտլերյան գազանները այնտեղ սպանեցին ավելի քան 6 միլիոն մարդ, որի հետևանքով Լեհաստանի բնակչության թիվը զգալիորեն կրճատվեց և ներկայումս կազմում է մոտ 25 միլիոն մարդ։

Գերմանական օկուպանտների ջախջախումից հետո բացվեցին Լեհաստանի քաղաքական-տնտեսական և կուլտուրական վերածննդի ամենալայն հեռանկարներ։ Ժողովուրդը չցանկացավ վերադառնալ դեպի անցյալը, այն ռեժիմին, որը երկիրը հասցրեց ազգային աղետի։ Լեհաստանը կանգնեց իր կյանքի նոր ուղու՝ դեմոկրատական վերակառուցման ուղու վրա։

Ժողովրդական մասսաների կամքն իր արտահայտությունը գտավ Ազգային ազատագրության Լեհական կոմիտեի մանիֆեստում։ 1944 թվականի հուլիսին հրապարակված այդ մանիֆեստը դարձավ նոր, անկախ, դեմոկրատական ռեսպուբլիկայի կառուցման ծրագիր։ Մանիֆեստը նախատեսում էր ագրարային ռեֆորմի անհապաղ կիրառումը, այսինքն բոլոր կալվածատիրական հողերի բռնագրավումն ու դրանց բաշխումը աշխատավոր գյուղացիներին։ Բացի դրանից, մանիֆեստը նախատեսում էր, որ գերմանացի-

ներին և նրանց լեհական բարեկամներին ու գործակալներին՝ լեհ ժողովրդի դավաճաններին պատկանող բոլոր արդյունաբերական ու առևտրական կազմակերպությունները պետք է ժամանակավորապես անցնեն պետության կառավարմանը։ Մանիֆեստը հռչակեց Լեհաստանի նոր, դեմոկրատական արտաքին քաղաքականություն և, ամենից առաջ, Սովետական Միության հետ եղբայրական բարեկամության ու սերտ համագործակցության քաղաքականություն։

Լեհաստանի տերիտորիան օկուպանտներից մաքրելուն զուգընթաց, նոր ժողովրդական իշխանությունը Լեհաստանում իրագործում էր տնտեսական ու քաղաքական կարևորագույն վերափոխումներ։

Լեհաստանի աշխատավորները եռանդուն կերպով ձեռնամուխ եղան իրենց ժողովրդական տնտեսության վերականգնմանը։ Արդյունաբերությանն էական օգնություն ցույց տվեց Սովետական Միությունը, լեհական գործարաններին մատակարարելով անհրաժեշտ հումք։ Ժողովրդական տնտեսության վերականգնման տեմպերն արագորեն աճում էին։

Ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերված առաջին լուրջ հաջո-



ղությունները հնարավորություն տվին ձեռնարկելու խոշոր և միջակ արդյունաբերության ազգայնացմանը, այսինքն դրանք պետության ու ժողովրդի ձեռքը անցնելուն։

Արդեն 1946 թվականի վերջերին ամբողջ արդյունաբերության արտադրանքը հասավ նախապատերազմյան մակարդակի ավելի քան 70 տոկոսին, իսկ մի շարք ճյուղերում մասնավորապես ածխարդյունաբերության մեջ գերազանցեց նախապատերազմյան մակարդակից։

Արտադրական վերելքը հատուկ ուժով դրսևորվեց արևմտյան հողերի յուրացման գործում, որոնք Լեհաստանին վերադարձվեցին Պոտսդամի որոշումների հիման վրա։ Այդ ընդարձակ տերիտորիաներում արդեն բնակություն են հաստատել մոտ 5 միլիոն լեհեր, որոնք մեծագույն ոգևորությամբ վերածնում են լեհական վաղեմի հողերը, վերականգնում են հանքահորերն ու գործարանները, քաղաքներն ու նավահանգիստները։

Արդյունաբերական ու ֆինանսական խոշոր կապիտալի տիրապետության ոչնչացումը երկրում, ագրարային ռեֆորմի իրագործումը նախադրյալներ ստեղծեցին ժողովրդական տնտեսության պլանավորման

համար։ 1946 թվականին մշակված ժողովրդական տնտեսության զարգացման եռամյա պլանը կարևորագույն էտապ կհանդիսանա Լեհաստանը ագրարային-ինդուստրիալ երկրից ինդուստրիալ-ագրարային երկրի վերածելու ճանապարհին։

Պլանի մեջ մեծ ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսությանը։ Ցանքերի ընդհանուր տարածությունը 1949 թվականի վերջին պետք է հասնի մինչպատերազմյան մակարդակին։ Եթե հաշվի առնենք կենսամթերքների արմատական վերաբաշխումը, որոնց զգալի մասն առաջ կլանում էին շահագործող դասակարգերը, ապա պարզ է, որ պլանի իրագործումն այս բնագավառում հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնելու բնակչության կենսամակարդակը։

Եռամյա պլանը, որն ընդգրկում է ժողովրդական տնտեսության բոլոր հատվածները, արտադրության ու առևտրի ասպարեզում որոշ տեղ տալիս է նաև մասնավոր կապիտալին, որի բաժինը կազմում է արդյունաբերական արտադրանքի ամբողջ արժեքի մոտավորապես 15 տոկոսը։

Ընդհանուր առմամբ արդյունաբերական արտադրանքի համախառն քանակը եռամ-



յակի վերջին տարում 1938 թվականի համե-
մատությամբ կկազմի 151 տոկոս։

Եռամյա պլանում չափազանց զգալի տեղ է հատկացվում արևմտյան հողերին, նրանց լիակատար տնտեսական և կուլտուրական միաձուլմանը Լեհաստանի մնացած մարզերի հետ։

Եռամյա պլանի իրագործումը Լեհաստանը կդարձնի տնտեսապես ուժեղ երկիր։ Եռամյակի առաջին տարին կատարվեց հաջող։ Արդեն 1947 թվականի դեկտեմբերի սկզբներին պողպատի ձուլումը կազմում էր տարեկան պլանի 103 տոկոսը, գլանվածքի արտադրության տարեկան պլանը կատարված էր 100 տոկոսով, տարեկան պլանից ավելի արդյունահանված էր մեկ միլիոն տոննա ածուխ։

Լեհական էկոնոմիկայի ընդհանուր ան-
շեղ ամրապնդման կոնկրետ ցուցանիշ կա-
րող է ծառայել էքսպորտի աճումը, որը 1947
թվականի օգոստոսին կազմեց 25 միլիոն
դոլլար, 1946 թվականին եղած ամսական
միջին 10.5 միլիոն դոլլարի փոխարեն։ Լե-
հական ածուխն սկսում է ավելի ու ավելի
զգալի դեր խաղալ Եվրոպայի ընդհանուր
վառելանյութային բալանսի մեջ։

Խոսելով Լեհաստանի տնտեսական զար-

ղացման մասին, անհրաժեշտ է ընդգծել այն բացառիկ մեծ դերը, որ խաղաց Սովետական Միության եղբայրական օգնությունը՝ արդյունաբերական հումքով, մետաղով հացահատիկով։

Տնտեսական նվաճումներն անխզելիորեն կապված են լեհական դեմոկրատիայի քաղաքական հաջողությունների հետ։ Երկրում ներքաղաքական դրության կայունացման առավել ուշագրավ արտահայտությունն է հանդիսանում միասնական բանվորական ճակատի ամրապնդումը, բանվորական երկու պարտիաների բեղմնավոր ու սերտ համագործակցությունը— Լեհական բանվորական պարտիայի (ՊՊՐ), որն ունի արդեն 800 հազար անդամ, հսկայական հեղինակություն վայելելով բանվոր դասակարգի ու աշխատավորական մասսաների ամենալայն խավերի մեջ, և Լեհական սոցիալիստական պարտիայի (ՊՊՍ), որը թվական տեսակետից երկրորդ քաղաքական պարտիան է երկրում։ Հակառակ լեհական դեմոկրատիայի թշնամիների բոլոր հաշիվներին ու դավերին, ամրապնդվում է լեհ բանվորների միասնական ճակատը, որը սոցիալիզմի ուղիով Լեհաստանի զարգացման շարժիչ ուժն է հանդիսանում։ Բանվորների միասնական



ճակատն իր հերթին զորեղ ողնաշարն է հանդիսանում Լեհաստանի ամբողջ դեմոկրատական բանակի, որը բացի լեհական բանվորական պարտիայից ու Լեհական սոցիալիստական պարտիայից ընդգրկում է նաև Ստրոննիցտվո Լյուդովե կոչվող գյուղացիական պարտիան և միջին խավերի ինտելիգենցիայի ու մանր բուրժուազիայի պարտիան։ Այդ բլոկը հենվում է մասսայական դեմոկրատական կազմակերպությունների վրա՝ պրոֆմիությունների, կոոպերատիվների, Կանանց լեհական դեմոկրատական լիգայի և այլն։

Դեմոկրատական բլոկը բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի և մանր բուրժուազիայի պրոգրեսիվ մասի հետ համագործակցության կազմակերպական արտահայտությունն է հանդիսանում։

Բանվոր դասակարգի միասնական ճակատի և բանվորների ու գյուղացիների դաշինքի հարաճուն ամրապնդման լույսով ամենայն ակներևությամբ մերկանում են միջազգային ռեակցիայի փորձերը, որոնց նպատակն է պայթեցնել լեհական ժողովրդի միասնությունը, երկրում առաջացնել տնտեսական ու քաղաքական քաոս։ Ինչպես հայտնի է, անգլո-

ամերիկյան իմպերիալիստների ձեռքին իբրև գլխավոր զենք շարունակում են ծառայել Լեհաստանի ռեակցիոն տարրերը, որոնք մինչև վերջին ժամանակներս խմբավորվում էին Պոլսկե ստրոննիցտվո լյուդովե կոչվող պարտիայի տխրահռչակ լիդեր Միկոլայչիկի շուրջը։ Միկոլայչիկը, որին Լեհաստան էր ուղարկել Չերչիլլը, Վարշավա գալու հենց առաջին օրվանից հետապնդում էր մեկ նպատակ— Լեհաստանի զարգացումը շրջել դեպի կապիտալիստական հարաբերությունների հին հունը, կործանել բանվորների և գյուղացիների դաշինքը, Լեհաստանը կրկին դարձնել իմպերիալիզմի ուժերի պլացդարմ ընդդեմ Սովետական Միության։ Կատարելով իրեն Լեհաստան ուղարկողների կամքը, Միկոլայչիկը և նրան շրջապատողները կանգնեցին լեհական դեմոկրատիայի դեմ ամենալկտի պայքարի ուղու վրա։ Վայելելով լիակատար լեգալություն, Միկոլայչիկի պարտիան սերտորեն համագործակցում էր ֆաշիստական տեռորիստական ընդհատակի հետ։ Լեհ ժողովրդի վրա ծանր նստեց տեռորիստական ընդհատակի և նրա լեգալ դաշնակիցների ավազակային գործունեությունը— բանդիտները սպանեցին մոտ 15 հազար մարդ, որոնց մեծամասնությունը



լեհական բանվորական պարտիայի անդամներ էին։

Բայց լեհական կառավարության ճիշտ, հետևողականորեն դեմոկրատական, վճռական քաղաքականությունը, կառավարություն, որը կանգնած է ժողովրդի կենսական շահերի և երկրի ազգային սուվերենիտետի պաշտպանության դիրքում, վիժեցրեց ռեակցիայի ոտնձգությունները։ Ընդհատակից դուրս եկան անտառային բանդաների ավելի քան 50 հազար մասնակիցներ, որոնք տեսնում էին որ իրենք լիովին մեկուսացած են ժողովրդից։ Լեհական դեմոկրատիայի հաջողությունները տարան դեպի Միկոլայչիկի մեկուսացումը նույնիսկ նրա սեփական պարտիայի ներսում, որի մեջ ամրանում է այն թևը, որը հասկացել է դեմոկրատիայի դեմ պայքարելու լիակատար անհուսալիությունը։ Սնանկացած քաղաքական խաբեբան փախավ Լեհաստանից և անգլիական ինքնաթիռով ժամանեց Լոնդոն։

Անկասկած, Միկոլայչիկի փախուստը կնպաստի Լեհաստանում քաղաքական մըթնոլորտի զտմանը։ Լեհական դեմոկրատիան է՛լ ավելի մեծ եռանդով ու վճռականությամբ կշարունակի իր ստեղծագործական մեծ աշխատանքը։

Գինը 50 կոպ.

Ժողովրդական, դեմոկրատական Լեհաստանը, որը հենվում է աշխարհի բոլոր ազատասեր պետությունների հետ համագործակցության վրա, իր մեծ ու անշահախնդիր բարեկամի՝ Սովետական Միության հետ դաշինքի վրա, աչքի ընկնող դեր է խաղում խաղաղության և դեմոկրատիայի գործի հետևողական պաշտպան։

Այսպես հին, պանական Լեհաստանի տեղում, որը ամենամոլի ռեակցիայի հենարանն էր, իմպերիալիզմի գաղութը, — ստեղծվել է մի նոր, ազատ, դեմոկրատական պետություն, որի ձայնին ունկնդրում են աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդները։

Ի. ԼԵՎԻՑԿԻ

---

Պատասխանատու խմբագիր՝
ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ՎՖ 01772 Պատվեր № 107 Տիրաժ 7.400
Ստորագրված է տպագրության 31/I 1948 թ.
Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора